## Աֆղաններ Պարսկաստան կ'ապաստանին

Թէհրանէն կը հեռագրեն թէ շուրջ 1000 աֆղան ընտանիքներ Աֆղանիստանէն գաղթած են Պարսկաստան, մանաւանդ Հերաթի նահանգէն, հոն տիրող խռովութեանց հետեւանքով:

Կառավարութիւնը ստիպեց գաղթականները որ սահմանագլուխը անցնելէ առաջ յանձնեն իրենց բոլոր զէնքերը եւ տեղաւորուին կառավարութեան նշանակած շրջանին մէջ:

## Լանէյի խորհրդաժողովը

Հետզհետէ Լահէյ կը հասնին զանազան երկիրներու պատուիրակները, մասնակցելու համար միջազգային խորհրդաժողովին, որ պիտի բացուի յառաջիկայ երեքշաբթի եւ պիտի զբաղի Եընկի ծրագրով: Ժողովները պիտի գումարուին Բինտերհոֆի «Ասպետներու սրահ»ին մէջ: Լրագրողներուն ամէն դիւրութիւն պիտի ընծայուի: Պատուիրակութեանց քարտուղարները, մեքենագիրները եւն. հաշուելով, կը կարծուի թէ ընդամէնը 1500 հոգի ներկայ պիտի ըլլան Լահէյի մէջ: Ասոնցմէ մաս մը Լահէյի, մաս մըն ալ Շէվէնինկէնի մէջ պիտի բնակին: Այս վերջին շէնքին մէջ պիտի հաստատուի գերմանական պատուիրակութիւնը: Ճամբայ ելած են 360 լրագրողներ, որոնց 100ը Գերմանիայէն:

Վարչապետ Բրիան եւ ֆրանսական պատուիրակութեան անդամները վաղը առաւօտ կը մեկնին դէպի Լահէյ, ուր պիտի հասնին իրիկունը:

## Թուրքիա կ'ընդունի՞ իրաւարարութիւնը

ԱԹԷՆՔԷՆ կը հեռագրեն.— Տեղեկութեան մը համաձայն, որ պաշտօնապէս չէ հաստատուած, Թուրքիա կ'ընդունի իրաւարարութիւնը երկու երկիրներու միջեւ առկախ խնդիրներու կարգադրութեան համար: Այս լուրը շատ լաւ տպաւորութիւն առաջ բերաւ քաղաքական շրջանակներուն մէջ:

⁂ Թուրքիոյ վարչապետ Իսմէթ փաշա Պոլսէն Էնկիւրի վերադարձաւ, ներկայ ըլլալու համար գործավարներու խորհուրդի նիստին, որ պիտի զբաղի Յունաստանի վերջին առաջարկներուն տրուելիք պատասխանով:

## Ցեփլինի թռիչքը Ատլանտեանի վրայ

«Կռաֆ Ցէփլին» ճանդարտօրէն կը շարունակէ իր ճամբան դէպի Հիւսիսային Ամերիկա: ինչպէս անցեալ անգամ՝ երբ Ամերիկայէն կը վերադառնար, այս անգամ եւս երիտասարդ մը պահուըտած է օդապարիկին մէջ: Նաւաստիները ճամբայ ելլելէ յետոյ միայն հաստատեցին անոր ներկայութիւնը: Երիտասարդը կը մերժէ յայտնել իր ինքնութիւնը: Իբրեւ պատիժ՝ հրամայած են խոհանոցին մէջ աշխատիլ եւ պնակները լուալ, սակայն շատ տրամադիր չերեւար սեւ աշխատանք կատարելու եւ որոշ ծեւականութիւններ ունի:

Անթելով մը ցէփլինը կը տեղեկացնէ թէ ժամը 100 քիլոմեդր արագութեամբ կը թռի, օդը լաւ է, երկինքը պայծառ եւ թեթեւ հով մը կը փչէ:

Ցէփլինը հետը առած էր 800 դեղձանիկ եւ քանի մը կապիկ: Անթելին մէջ կ'ըսուի թէ «դեղձանիկները ուրախ են, բայց չեն երգեր: կապիկները տխուր են, բայց շատ յայտնի չեն ըներ. ճամբորդներուն մեծ մասը պրիճ խաղալով կ'անցընէ ժամանակը»:

Վերջին անթելի մը համաձայն, ցէփլինը արդէն անցած է Ասորեան կղզիներու վրայէն եւ կ'ուղղուի դէպի Նիւ Եորք, ուր կը սպասուի այսօր՝ կիրակի առաւօտ:

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ ՔԼՈՒԻ ԱՆՏԱՌԸ

Կազմակերպուած Ա. Ե. Հ. Կ. Խաչի Փարիզի «Մանուկներու Պաշտպանութիւն» մասնաճիւղի կողմէ:

Այսօր կիրակի առաւօտ 10էն մինչեւ երեկոյ: Երգ, պար, նուագներ, եւայլն: Ճոխ պիւֆէ, պաղ ըմպելիներ եւ արեւելեան կերակուրներ:

Հաղորդակցութեան միջոցներ.— Թրամուէյ թիւ 2, 18 եւ 25, շոգեկառք Կար Սէն Լազարէն եւ շոգենաւ: Առաջնորդներ պիտի սպասեն Թրամուէյի վերջաւորութեանը առաւօտեան ժամը 10էն սկսեալ:

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՍԱՐՍԷԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Սարսէլի «Արարատ» Միութեան կողմէ ի նպաստ Մանկապարտէզի ֆոնտին, այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Salle des Fêtes, Rue de Paris.

կը ներկայացուի ՈՒՇ-ԼԻՆԻ ՆՈՒՇ-ԼԻՆԻ

Կը խօսի՝ Փարիզահայ Տիկ. Միութեան Կարմիր Խաչի կողմէ՝ Տոքթ. Շ. Այվազեան (Շ. Նարդունի) մանուկներու առողջապահութեան մասին:

Երթեւեկութիւն.— Gare du Nordէն թողն առնել հետեւեալ ժամերուն 10.15, 10.22, 11.51, 1.43 եւ 1.53, իջնել Սարսէլի կայարանը:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

թիւն մը պիտի կատարուի՝ խորհրդային միութեան ճարտարարուեստացման համար։ Այս փոխառութեան մէկ երրորդը տոկոս կը բերէ եւ պարգեւաւոր վիճակահանութիւն ունի, իսկ մնացեալ երկու երրորդը տոկոս չի բերեր, սակայն վիճակահանութիւններէն կ՚օգտուի։

Խորհրդային կառավարութեան կողմէ շարունակ այսպէս ներքին երբուն պարտքեր ստեղծուիլը հետաքրքիր ուսումնասիրութեան նիւթ դարձած է պալթիկեան տնտեսագէտներուն համար, որոնք դիտել կուտան թէ այս փոխառութիւնները, որոնք թոշակներու վճարման օրերուն պարտադիր կերպով կը ծախուին բանուորներուն, իրականին մէջ ռուս գործաւորը կը ստիպեն տարուան մէջ երկու կամ աւելի ամիսներ առանց օրավարձի աշխատիլ, յանուն ճարտարարուեստի ազգայնացման։ Այս ներքին բռնի փոխառութիւններուն շնորհիւ Խորհրդային Առեւտրական Մենաշնորհը կարող կ՚ըլլայ իր ապրանքները արտածել արտասահման, ուր անոնք կը ծախուին հրապարակի գինէն աւելի պակասով։ Այս ձեւով երկրէն ներս կը մտնէ օտար դրամ, որուն պէտք ունի խորհրդային կառավարութիւնը իր ստացած վարկերը հատուցանելու համար։

Ներկայ վարչաձեւին տակ, կ՚ըսեն տնտեսագէտները, բոլշեւիկները անխնայ կը շահագործեն ռուս բանուորները։ Ներկայիս ռուսական արտածումները կրնան մրցիլ ամէնէն զարգացեալ դրամատիրական երկիրներուն հետ։

## Ճերմակներու առուտուրը

Լեհ ոստիկանութիւնը երեւան հանեց կազմակերպութիւն մը, որ ճերմակներու առեւտուրով կը զբաղէր խիստ ընդարձակ սահմանի վրայ։

Այս կազմակերպութիւնը կը փնտռէր ու կը գտնէր աղջիկներ, որոնք նշանած ունէին Ամերիկայի մէջ, եւ որովհետեւ նշանուած աղջիկները չէն կրնար Ամերիկա մտնել ամուսնանալէ առաջ, կազմակերպութեան պետը՝ ամերիկահպատակ հրեայ մը, խախամի մը և դատաւորի մը մեղսակցութեամբ փոխանորդաբար կը պսակուէր աղջիկներուն հետ, որոնք այս ձեւով կրնային «վիզա» ձեռք բերել՝ վերջապէս երթալ միանալու համար իրենց նշանածին։ Կազմակերպիչները կը հաւաստէին թէ այս վերջինը տեղեակ է եղած կարգադրութեան։

Ամերիկեան հող ոտք կոխելէ վերջ, աղջիկները միջնորդներու ձեռքով կրկին նաւ կը դրուէին՝ ղրկուելու համար դէպի Հարաւային Ամերիկայի հանրատուները։

## 50 միլիոն Իտալացի

Ֆաշիստ կառավարութեան հրատարակած վերջին պաշտօնական վիճակագրութեան համաձայն, աշխարհի վրայ կան 50,473,000 իտալացիներ, որոնց 41.173.000ը կը բնակին իտալիոյ, 9,300,000ը արտասահմանի մէջ։

Թէեւ գերմանիոյ ու Անգլիոյ բնակչութենէն յետոյ, այս 41 միլիոն իտալացիները կը կազմեն ամէնէն կարեւոր միաւորը եւրոպայի մէջ՝ ազգային թէ քաղաքական տեսակէտով, սակայն ապագային մասին որոշ մտահոգութիւն կը տիրէ։

Այսպէս, դիտել կը տրուի թէ ներկայ տարուան առաջին հինգ ամիսներու ընթացքին, ծնունդները անցած տարուան նոյն շրջանին հետ համեմատելով 22,000 պակաս եղած են, մինչ մահերը 66.000 աւելցած են։ Այնպէս որ այս տարի իտալացի ժողովուրդին աճումը եղած է 122.630 հոգի, մինչ անցած տարի 209,085 հոգի էր։

Մուսոլինի մեծ ճիգ կը թափէ՝ բազմածնութիւնը քաջալերելու համար երկրին մէջ, վախնալով որ իտալիա ալ վարակուի Ֆրանսայի մէջ ծայր տուած մալթուսականութենէն։

## Նոր գիսաւոր մը

Յոհաննէսպուրկի մէջ (Հարաւային Ափրիկէ) խումբ մը գիտնականներ, որոնց կարգին սըր Ֆրէնք Տայսըն, Անգլիոյ թագաւորին աստղաբաշխը, տեղւոյն դիտարանին մէջ հաւաքոյթ մը ունէին, երբ Բարեյուսոյ գլխէն՝ սիրող աստղաբաշխի մը՝ Ֆորպի կողմէ հեռագիր մը եկաւ, յայտնելով թէ նոր գիսաւոր մը գտնուած է։ Նոր գիսաւորին գոյութիւնը ապացուցուեցաւ լուսանկարներով։



IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

# ՄԷՆԱՐ - ԴՈՐԻԱՆ

I

Փորձեմ գէթ այժմ — մահէն մէկուկէս ամիս յետոյ — ուրուագծել այդ օտար, ազնուական կնոջ պատկերը, որ արժանի է Հայ գրչի մը անվերապահ ու խանդավառ ներբողանքին։ Արժանի է գրելթէ նոյնքան, որքան Հայ ազգային վաստակաւոր գործիչ մը, Հայոց ազատութեան զինուոր մը։

Եղան վայրկեաններ այս վերջին քառորդ դարու մեր ալեծուփ պատմութեան ընթացքին, երբ մենք, խորապէս, վրդովուած մեծ պետութիւններու կառավարութեանց տմարդի արարքներէն, յուսալքումի ժեստեր կ'ընէինք,— նա մեզ կը յուսադրէր, կը քաջալերէր, կը մտրակէր մեր եռանդն ու կորովը

մար, այլ կուգային ծեծելու քաղաքական, ստէպ համամարդկային, այժմէական, հրատապ խնդիրներ։

Երկու ամուսիններ էին, երկուքն ալ վառուած դեմոկրատիզմի ու ազատութեան իտէալով։ Հոյատիպ կին մը՝ որ զարդն էր սալօնի, թէ իր արտաքին գրաւչութեամբ եւ թէ մտաւոր պատրաստութեամբ, նուրբ, խելացի ու լեզուանի, շատ կարդացած եւ երիտասարդութեան օրերն ապրած ժամանակակից գրական ու քաղաքական աստղերու մթնոլորտին մէջ — Վիքտոր Հիւկոյի, Գամբեթայի, Ժիւլ Սիմոնի եւ այլոց։ Վիքտոր Հիւկոյի ընտանիքին հետ կապուած էր արդէն խնա...

Հայկական Դատով, որ գերազանցապէս մարդկային դատ մըն է։

Երբ 1905ի օգոստոսին — ասկէ ուղիղ 24 տարի առաջ — Պիեռ Քիյեառի հետ առաջին անգամը ծանր առաքելութեամբ մը կ'երթայի նշանաւոր Ֆրանսացիին քով, մեր ողբացեալ բարեկամը, Մէնար-Դորիանի բարեժամանութիւնները յիշատակելով, կ'ըսէր ինծի իր սովորական անոյշ ժպիտով.

— «Մանաւանդ չմոռնաք անոր հետ խօսելու ատեն, յիշել Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը եւ յորդոր ուղղել յանուն ազատութեան ու մարդկայնութեան... Ատիկա անհրաժեշտ է... խոշոր մարդիկ իրենց թուլութիւններն ունին»...

Փակագիծ մը անհրաժեշտ է հոս՝ պատմելու համար ուշագրաւ դէպք մը Հ. Յ. Դաշնակցութեան պատմութենէն, ...

...

առաջնորդներու, աշխարհահռչակ յեղափոխական դէմքերու... Սալօն մը, ուր մարդիկ չէին հաւաքուեր հաճելի ժամանցի համար ...

Նուր Միրաբօներու եւ Դանտոններու անունով։

Այդպիսի մարդ մը չէր կարող, բնականաբար չհետաքրքրուիլ ...

Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ

## 116 — ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ

### ՀԱՅԱՍՏԱՆԷՆ

3. ՕՍԱՆԱ

Օսանա՝ ընկայ ջուրը գնացի,
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛
Օսանա՝ խեղդուելով մնացի-
Օսանա՛ հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ խանի1) շորերս չորցրի,
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ թէլի2) եարին կորցրի:
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ - տղայ մէրդ մեռել ա,
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ շորերդ կեղտոտել ա:
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ - աղջի արի քե տանեմ,
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ քեզի սարեր կը հանեմ:
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝- կազէթ ունեմ կարդալու,
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.
Օսանա՝ երեւան եմ երթալու,
Օսանա, հա՛յ Օսանա, Օսանա՛.

4. ՄՈԿՈՒ ՇՈՒԿԷՆ

Մոկու3) շուկէն լէն4) ու էրկէն5),
հալալէ ճա՛ն, լալէ(կրկնել)
էրկու ջահել կ'էրթէն կուգէն
հալալէ ճա՛ն, հալէ(կրկնել)
Մէկն էր պեխով, մեկն էր անպեխ.
էն պեխերովն էր իմ աղբօր տեղ,
էն անպեխմն էր անտուն անտեղ,
Տուն եմ շիներ գետի բերան
վըրէն թալեր6) ջուխտ մը գերան.
Ծիրան փթխաւ7) եղբօրս բերան...

Հաւաքեց՝ Արշ. Իսրայէլեան

Ծանօթ.— 1) հանեցի, 2) եարին անունը, 3) Մոկս. Շատախի մօտ քաղաք, 4) լայն, 5) երկայն, 6) նետել, 7) հասունցած պտուղի պայթումը բերնին մէջ։ ...

ԸՆԹԵՐՑՈՂԻՆ ՅՈՒՇԱՏԵՏՐԸ

## „ՀԱՅՐԵՆԻՔ"Ի ՍԵՐՈՒՆԴԸ

Սկիւտարի Րաֆֆի լսարանին հրաւէրով, հայ պատգամաւորի մը հաշուետուութիւնը ըրած պահուն, այսպէս կը բնորոշէր Գրիգոր Զօհրապ, Պոլսոյ վերջին եօթանասուն տարուան պատմութեան երեք մեծ բաղխումները.

«Առաջինը՝ արհեստաւորներու համբաւաւոր ընդվզումն է ամիրաններուն դէմ. մխիթյան ժողովրդական իրաւունքներու պայքար: Երկրորդը՝ Օտեաններու, Ռուսինեաններու, Ֆրանսայի մէջ ուսում առած մտաւորականներու, 48ի երիտասարդներու երեւումն է. մտքի պայքար եւ լեզուի պայքար: Երրորդը՝ միացեալ ընկերութիւնները կազմող երիտասարդութեան ասպարէզ նետուիլն է՝ Արեւելքով, ...

...

## ՕՐԵՐԸ ԳԵՂԵՑԻԿ ՁԵՆ...

# ԱՆՎԵՐԱԴԱՐՁ ՄԱՆԿՈՒԹԻՒՆ, ԱՆԴԱՐՁ ՏԱՐԻՆԵՐ...

(ՀԱՏՈՒԱԾ)

... Ճառագայթարձակ ու գեղջուկ արեւ մը հեռզհետէ կը բարձրանար ու կ'ողողէր գրեթէ ուղղաձիգ շողերով՝ ամբողջ բուսականութիւնը, ծառերն ու ճամբաները։ Ամբողջ դաշտէն, լայն ու կարծես ուրախ ալիքներով՝ կը բարձրանար հեռաւոր շշուկ մը։ Ու այդ շշուկին մէջէն մարդ կը զգար թռչուններու երգ ու անասուններու ձայն, հողի ստեղծագործ աղմուկ ու սիրոյ անուշ երգեր։ Ծուռ Կարապետ կը սուլէր միշտ ու իր սուլոցը զուարթ էր, ուրախալի, կարծես թէ մանկական։ Բարակ հով մը կը գգուէր խոտերն ու ծաղիկները եւ Ծուռ Կարապետին չուրջ այլ պայծառ դէմքը։

Շուրջը՝ մարգարտածաղիկներուն եւ կակաչի ու հարսնուկի հրափայլ պսակներուն վրայ՝ փոքրիկ, անանուն միջատներ, անձա՛յն, կը ցատկէին ծղօտէ ծղօտ, ծիլէ ծիլ։ Ջատկամիջատ մը՝ իր խաւ...

...

*Թուղթեր եւ Ազգ. Պաշտպանութեան գանձատոմսեր 2 տարիէն վճարելի՝ 10,540,398 ֆր. 88. պարտքի կողմը՝ պայմանաժամով պահ դրուած գումարներ՝ 11,221,145 ֆրանք։*

*Կ՚ըսուի թէ Առեւտրական դատարանը մօտ օրէն պիտի պահանջէ մնանկ հռչակել բանուորա-գիւղացիական դրամատունը։*

## Նոպէլեան մրցանակը

Նոպէլեան մրցանակի գումարը այս տարի 1,200,000 ֆրանք պիտի ըլլայ, շուէտական կառավարութիւնը հրաժարած ըլլալով իր գանձած տուրքերէն։

Գրական մրցանակի թեկնածու կը նկատուի գերման նոր գրող մը՝ էրիխ Մարիա Ռըմարք, որուն միակ գիրքը՝ *«Արեւմտեան կողմէն նոր բան չկայ»* հարիւր հազարաւոր սպառում ունեցաւ, թարգմանուելով զանազան լեզուներու։

## Նոր ողողումներ Տրապիզոնի շրջանին մէջ

Տրապիզոնէն կը հեռագրեն թէ անցած շաբաթ տեղատարափ անձրեւ եկած է Սիւրմէնէի մէջ եւ դարձեալ հեղեղներ գոյացած են։ Հեղեղը բաւական վնասներ պատճառած է։

Տրապիզոնի շրջանին մէջ ամէն գիշեր կ՚անձրեւէ. ցորեկները արեւոտ են եւ օդը շատ տաք է։ Ծխախոտի եւ եգիպտացորենի բերքը շատ լաւ է այս տարի։

Պրուսայի մէջ ալ զանազան տեղեր առատ անձրեւ եկած է։ կէօքտէրէ որ բոլորովին ցամքած էր, յանկարծ յորդելով վնասներ պատճառած է։

## Հրեաներու արտագաղթը Ռուսիայէն

*Մոսկուա, 17 Օգոստ.— Մեծ թիւով Հրեաներ կ՚ուզեն Ամերիկա գաղթել Ռուսիայէն, մանաւանդ Ուկրայնայէն։ Այս գաղթին պատճառն այն է որ երկու միլիոն հրեայ Ռուսեր չեն կրցած հացի եւ ուրիշ ուտելիքի քարտեր ստանալ, իբրեւ «ոչ-աշխատաւոր»։*

## Վաթսուն գիւղեր ջուրերու տակ

*Քարաչի, 17 օգոստոս.— Խայփուրի նահանգին (Հնդկաստան) մէջ մեծ ողողումներ տեղի ունեցան։ Վաթսուն գիւղեր ջուրերով ծածկուեցան։ Հարիւրաւոր բնակիչներ յուսահատ վիճակի մէջ են։ Ոմանք ստիպուեցան ծառերու գագաթը ապաստանիլ սպասելով որ օգնութիւն հասնի։ Վնասները 330,000 անգլ. ոսկի կը հաշուուին։*

## Պիրէնէի մախաստանը այրած

*Գիշերանց ծագած սաստիկ հրդեհի մը հետեւանքով, բոլորովին հրոյ ճարակ դարձան Պիրէնէի մաքսատան մթերանոցները, որոնց մէջ Թրանզիթի համար մեծ քանակութեամբ ապրանքներ կային։ Այրեցան նաեւ մասնաւոր մթերանոցներ։ Ընդհանուր կորուստ կը հաշուուի 200-300 միլիոն տրախմի։*

## Ցէփլինի թռիչքը դէպի Ճափոն

*Ցէփլինը ուրալեան լեռները անցաւ Լէնինգրատէն 1480 քիլոմեդր հեռու։ Եւրոպան Ասիայէն զատող այս լեռնաշղթան կտրելէ յետոյ, ցէփլինը մտաւ Սիպերիա, որուն վրայէն իր թռիչքը կը շարունակէ բնականոն պայմաններու մէջ։ Վերջին հեռագիրը կ՚ըսէ թէ Թարա քաղաքին 400 քիլոմեդր հիւսիսէն անցած է։*

### Դ Ա Շ Տ Ա Հ Ա Ն Դ Է Ս

Խանասորի 32րդ տարեդարձին առթիւ, կազմակերպուած Անիէռ-Պուա քոլոմպի եռագոյն ենթակոմիտէին կողմէ։ Այսօր կիրակի առաւօտէն մինչեւ իրիկուն Արժանթէօյի մէջ։

*Կը նախագահէ՝ ԸՆԿ. ԳԱՌՆԻԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ*

*Կը խօսի՝ ԸՆԿ. ՄԵՍՐՈՊ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ*

*Ճոխ պիւֆէ։ Հաղորդակցութեան միջոց՝ Կար Սէն-Լազարէն շոգեկառք եւ Փորթ տը Քլիշիէն հանրակառք առնել եւ իջնել Կար տ՚Արժանթէօյլ։*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

շատ լաւ ուսումնասիրած են օրէնքներն ու սովորութիւնները այն երկիրներուն, ուր կը գործեն, ինչպէս նաեւ Թմրեցուցիչները քշելու տեղերը:

Վերջին տարիներս ամբողջ աշխարհի մէջ ոճիրները անհամեմատօրէն շատցած են: Լոնտոնի համազգեստաւոր ոստիկաններուն վրայ 1500, իսկ գաւառի գաղտնի ոստիկաններուն վրայ 100 հոգի պիտի աւելցուի:

## Նոր վիճակ Երուսաղէմի մէջ

*Հրէական հեռագրական գործակալութիւնը օգոստոս 24 Թուակիր հեռագրով մը կը հաղորդէ Թէ Լացի Պատի խնդրին առթիւ Երուսաղէմի մէջ Հրեաներու եւ Արաբներու միջեւ երկու ժամ տեւող նոր կռիւ մը տեղի ունեցած է: Ընդհարումներու ընթացքին սպաննուած են երեք Արաբներ եւ երեք Հրեաներ, վիրաւորուած են 107 հոգի, որոնց 16ը խիստ ծանր վիճակի մէջ: Բոլոր խանութները փակուած են: Ոստիկաններ եւ զրահապատ ինքնաշարժներ պահակ կը պտտին փողոցներուն մէջ:*

## Նաւային զաղտնի համաձայնագիրը

*Ինչպէս կը յիշուի, անցեալ հոկտեմբերին ամերիկացի լրագրող մը՝ Հարոլտ Հորան յաջողած էր ձեռք բերել գաղտնի շրջաբերական մը՝ անգլեւֆրանսական համաձայնութեան մասին: Իբրեւ մեղսակից կ'ամբաստանուէին արտաքին Նախարարութեան երկու պաշտօնեաներ՝ Նոյլէ տ'Անկլիւր եւ Ռոժէ Տէլփլանք: Հորան որ ձերբակալուելէ յետոյ ազատ Թողուած էր, փախաւ Պելճիքա, անկէ ալ Ամերիկա անցաւ:*

*Հարցաքննիչ դատաւոր Օպրի, որ ամիսներէ ի վեր կը քննէր խնդիրը, բոլորովին անպարտ արձակեց ֆրանսացի երկու պաշտօնեաները, որոնց բարեմտութիւնը հաստատուած էր:*

## Նատիր խանի թերթը

*Զօրավար Նատիր խան սկսած է հրատարակել «Իսլահ» անուն Թերթ մը, որուն նպատակն է աֆղանական եւ իսլամական միութիւն առաջ բերել, վերջ տալ Ներկայի իսլամներու իբերասպանութեան եւ տալ շիտակ լուրեր: Առաջին Թիւին մէջ կը բացատրէ ներկայ քաղաքացիական պատերազմին պատճառներն ու պատմականը ու հրաւէր կը կարդայ ձերբազատուիլ Քապուլի աւազակէն: Մանրամասնութիւններ կուտայ «Ծըրկա»յին (Ազգ. ժողով) մասին, ուր որոշուած է զինուորագրել զինուորութեան յարմար երեք հոգիէն երկուքը, Նշանակուած է ազգային մարմին մը՝ գործերը վարելու համար: Յետոյ ծանր պատիժներ կը սահմանէ դասալիքներուն, լրտեսներուն, դաւաճաններուն, ապստամբներուն եւ աւարառուներուն:*

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԻՆԴՈՍ գետը յորդած է սարսափի ենթարկելով երկու եզերքներու բնակիչները, որոնք խուճապահար կը փախչին դէպի բարձունքները: վերջին օրերու յորդառատ անձրեւները աւելի ծանրացուցած են կացութիւնը: Քարաչիէն կը հաղորդուին Թէ Ինդոս հոսը քշած կը տանի մարդու եւ անասունի բազմաթիւ դիակներ: Շատ մը գիւղեր ջուրերու տակ մնացած են: կը վախցուի որ քոլերայի համաճարակ ծագի Հնդկաստանի մէջ:

ԿՈՄՍ ՑԷՓԼԻՆ առջի օր Թոքիոյէն ճամբայ ելաւ դէպի Քալիֆոռնիա: ճամբան սաստիկ փոթորիկի հանդիպեցաւ, բայց յաջողութեամբ դիմադրեց: վերջին հեռագիրը կ'ըսէ Թէ Թոքիոյէն 2500 քիլոմեդր հեռուն կը գտնուի:

ԻՏԱԼԻՈՅ կարտա լիճին վերեւ ջրօդանաւի փորձեր կ'ըլլային Շնայտէրի Բաժակին մրցումներուն պատրաստուելու համար: Հաբիւրապետ ճուզէփփէ Մոթթա ժամը 550 քիլոմեդր արագութեամբ կը սուրար, երբ յանկարծ 100 մեդր բարձրութենէ ուժգնօրէն ջուրին մէջ ինկաւ եւ անհետացաւ: կը կարծուի Թէ Մոթթա գլուխը դարձուցած ըլլալով, վայրկենապէս կուրցած էր կեդրոնախոյս ուժի ազդեցութեան ներքեւ: Այս արկածին հետեւանքով, Շնայտէրի մրցումները մէկ ամիս յետաձգուեցան:



ՄԱՐՍԷՅԼԷՆ կը գրեն մեզի.— Հայ երիտասարդ մը, Պ. Պարոյր Սարգիսեան, որ եգիպտոսէն եկած էր, Աքսաէմի տը Տանսէն յաջողեցաւ առաջին աստիճանի վկայական ստանալ. եւ դժուարահաճ փրոֆէսէօրներու եւ փրոֆ. Պրէտալի ներկայութեան քննութիւն տալով, ստացաւ պարի փրոֆէսէօրի առաջին վկայական ու աստիճան:



**ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԱՐԺԱՆԹԷՕՅԼԻ ԱՆՏԱՌԸ**

*Նախաձեռնութեամբ Շապին Գարահիսարի եւ շրջանի ՌԱԶՄԻԿ Հայր. Միութեան, այսօր կիրակի առաւօտ ժամը 9էն մինչեւ իրիկուն:*

*Կը խօսին՝* Պ. Պ. Լեւոն Մօզեան եւ Յ. Պուռնազեան

*Նուագ, երգ, գաւառական եւ Գարահիսարի հարսնիք, խնջոյք, տեղական պարեր՝ կիներու եւ այրերու կողմէ:*

*Գաւառական Նուագ ղեկավարութեամբ Պ. Քաջվարդ Սէրճանեանի, քէմէնչէ, սանթուր, կիթառ եւայլն: Ծոխ պիւֆէ:*

Հաղորդակցութեան միջոցներ.— *Փլաս տը Քլիշիէն կամ Փորթ տը Քլիշիէն առնել Թրամուէյ Թիւ 40. շոգեկառք Սէն Լազարէն և իջնել Արժանթէօյլի կայարանը, ուր առաջնորդներ պիտի սպասեն ժամը 9—2:*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

